Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 34-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## Նյութեր զեկուցումների և զրույցների համար

*Սովետական Միության ժողովուրդները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձը տոնում են մեր երկրի տնտեսական, քաղաքական ուժերի աճման ու ամրապնդման, գիտության ու կուլտուրայի բուռն զարգացման և աշխատավորության կյանքի բարեկեցության աննախընթաց վերելքի պայմաններում։*

*Մեր երկրի աշխատավորների հետ միասին, աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը փառապանծ տոնը նշում է Սովետական Միության կողմից գլխավորվող սոցիալիզմի, դեմոկրատիայի ու խաղաղության լագերի ուժերի ամրապնդման, պատերազմի հրձիգների դեմ պայքարի ուժեղացման և խաղաղության մեծ գործի համար հզոր շարժում ծավալվելու պայմաններում։*

Երեսունչորս տարի առաջ մեր երկրի բանվոր դասակարգը, բոլշևիկների պարտիայի գլխավորությամբ, Լենինի-Ստալինի առաջնորդությամբ կատարեց սոցիալիստական ռևոլյուցիա, ճեղքեց համաշխարհային կապիտալիզմի շղթան Ռուսաստանում, սկիզբ դրեց կապիտալիստական ստրկությունից աշխատավորների ազատագրման նոր դարաշրջանի:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ ստեղծված Սովետական պետության հռչակած սկզբունքները՝ ազգերի ինքնորոշման իրավունքի, ժողովուրդների համագործակցության ու անվտանգության ապահովման, ամբողջ աշխարհում խաղաղության պահպանման մասին, ամբողջովին փոխեցին համաշխարհային պատմության զարգացման ընթացքը:

Սովետական իշխանության առաջին քայլերից մեկը եղել է խաղաղության Դեկրետը: Սովետների երկրորդ համագումարը, Սովետական Ռեսպուբլիկայի հռչակման հետ, դիմեց բոլոր պատերազմող երկրների կառավարություններին ու՝ ժողովուրդներին, կոչ անելով վերջ դնելու այն արյունահեղությանը, որով շահագրգռված են միայն բանկիրները, գաղութարարները, զենք վաճառողները:



Պատմական դարագլուխ ազդարարող այդ համագումարը կոչ արեց. «Հաջողությամբ մինչև վերջը հասցնել խաղաղության գործը»:

Հավատարիմ մնալով Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մեծ սկզբունքներին, Սովետական պետությունը, իր ամբողջ պատմության ընթացքում, միշտ դիմակազերծ է արել իմպերիալիստների նենգ դիտավորությունները խաղաղասեր ժողովուրդների նկատմամբ: Բացահայտել ու նշավակել է պատերազմի հրձիգների հանցավոր ծրագրերը, ծրագրեր, որոնցով աշխարհի խոշոր իմպերիալիստական պետությունները, այդ թվում առաջին հերթին Ամերիկայի Միացյալ Նահանգները, Անգլիան, Ֆրանսիան ձգտել են գաղութացնել ուրիշ ժողովուրդների, նրանց ուսերին դնել շահագործման ծանր լուծը:

Հետևողականորեն կենսագործելով լենինյան-ստալինյան խաղաղասիրական քաղաքականությունը, բոլշևիկների պարտիայի կողմից դաստիարակված սովետական մարդիկ անցած երեսունչորս տարիների ընթացքում աշխատել ու պայքարել են խաղաղության, միջազգային անվտանգության ամուր պատվար սոցիալիստական Հայրենիքի տնտեսական-քաղաքական հզորության համար:

Սովետական Միության ժողովուրդները

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նվաճումները պաշտպանել են քաղաքացիական կռիվների, օտարերկրյա ինտերվենտների դեմ մղած պայքարի և Հայրենական Մեծ պատերազմի հերոսական մարտերում, մեր մարդկանց արյան գնով նվաճել են խաղաղ աշխատանքի, տնտեսության և կուլտուրայի նոր, հզոր վերելքի հնարավորություններ։

***

Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո, խաղաղ աշխատանքի ու պայքարի գլխավոր հանրագումարը, որով դիմավորում ենք Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձը, դա ՍՍՌՄ 1946—1950 թվականների չորրորդ (հետպատերազմյան առաջին) հնգամյա պլանի կատարման արդյունքներն են, ինչպես նաև նրանից հետո անշեղորեն վերելք ապրող կոմունիստական շինարարության, կոմունիզմի հզոր կառուցումների փայլուն ցուցանիշները։

Հայտնի է, որ համաշխարհային երկրորդ պատերազմում ֆաշիստական հրոսակները հսկայական վնաս հասցրին մեր երկրին։ Նրանք ամբողջովին կամ մասնակի ավերել ու այրել էին 1710 քաղաք, 70 հազարից ավելի



գյուղ և 31.850 արդյունաբերական ձեռնարկություն, ավելի քան 65 հազար կիլոմետր երկաթգիծ, քայքայել ու կողոպտել էին 98 հազար կոլտնտեսություն, մի քանի հազար մեքենա-տրակտորային կայան, սովխոզ և այլն։

Հինգ տարի առաջ ընկեր Ստալինը սովետական մարդկանց առաջ դրեց հոյակապ, մարտական, անհետաձգելի խնդիր՝ ամենակարճ ժամկետում բուժել մեր երկրին թշնամու հասցրած վերքերը և վերականգնել ժողովրդական տնտեսության զարգացման նախապատերազմյան մակարդակը այն հաշվով, որ նա ամենամոտ ժամանակում զգալիորեն գերազանցի այդ մակարդակը, բարձրացնել ժողովրդի նյութական բարեկեցությունը և է՛լ ավելի ամրապնդել Սովետական պետության ռազմատնտեսական հզորությունը։

Ընկեր Ստալինի առաջադրանքների կենսագործման համար, սովետական ժողովրդի գործունեության ծրագիր հանդիսացավ ՍՍՌՄ 1946—1950 թվականների չորրորդ (հետպատերազմյան առաջին) հնգամյա պլանը։

Սովետական ժողովուրդը հնգամյա պլանը ընդունեց, որպես իր ցանկությունների, իր շահերի արտահայտություն և ոչինչ չխնայեց

նրա կենսագործման համար, կրկին ու կրկին ցուցադրելով իր հիանալի հատկությունները։

***

ՍՍՌՄ Գերագույն Սովետի կողմից 1946 թվականի մարտին ընդունված հնգամյա պլանը, սովետական մարդկանց ջանքերով, կատարվեց ժամկետից 9 ամիս շուտ։ Ամբողջ արդյունաբերության արտադրանքի ծավալը հնգամյակի վերջին տարում, 1940 թվականի համեմատությամբ, պետք է ավելանար 48 տոկոսով, փաստորեն ավելացել է 73 տոկոսով։

Հնգամյա պլանի առաջադրանքները սև և գունավոր մետալուրգիայի ասպարեզում ըդգալիորեն գերակատարվել են։ Սև մետալուրգիայի արտադրությունը 1950 թվականին նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 45 տոկոսով։

Պատերազմի ժամանակ ամբողջովին ավերված Հարավի մետալուրգիական արդյունաբերությունը վերականգնվել է՝ տալով նախապատերազմյան ժամանակվանից շատ արտադրանք։ Այժմ ավելի շատ արտադրանք են թողարկում արևելյան շրջանները՝ Ուրալը, Սիբիրը։ Կազմակերպվել է սև մետալուրգիայի արտադրությունը Միջին Ասիայում և Անդրկովկասում։



Նոր հանքահորերի շահագործման, գործարանների կառուցման շնորհիվ գերակատարվել է պղնձի, ալյումինի, նիկելի, կապարի, ցինկի և այլ գունավոր և հազվագյուտ մետաղների արտադրությունը, գերազանցելով նախապատերազմյան մակարդակը։

Խոշոր են ածխարդյունաբերության, նավթարդյունաբերության, էլեկտրաարդյունաբերության հաջողությունները։ Հնգամյակի ընթացքում, 1940 թվականի մակարդակի համեմատությամբ, ածխի հանույթը ավելացել է 57 տոկոսով, նավթի հանույթը՝ 22 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 87 տոկոսով։

Վերականգնվել են պատերազմի ժամանակ ավերված Դոնբասի և Մերձմոսկովյան ածխի ավազանները։

Վերականգնվել են պատերազմի ժամանակ քայքայված Մայկոպի, Գրոզնու, Արևմտյան Ուկրաինայի նավթային շրջանները։ Լրջորեն աճել է նավթային նոր շրջանների նշանակությունը Արևելքում։ Այժմ արդեն ՍՍՌՄ-ում նավթի ընդհանուր հանույթի մեջ արևելյան շրջանների տեսակարար կշիռը 1940 թվականի 12 տոկոսի դիմաց ավելացել և հասել է 44 տոկոսի։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում

վերականգնվել են ավերված տասնյակ էլեկտրակայաններ, որոնց թվում՝ Լենինի անվան Դնեպրյան, Դոնբասի, Մերձդնեպրյան, Կիևի, Խարկովի, Օդեսայի, Սևաստոպոլի, Ստալինգրադի և այլ հիդրոէլեկտրակայաններ։

Սովետական ժողովուրդը աննախընթաց հաջողություններով է դիմավորում Հոկտեմբերյան տոնը մեքենաշինության, քիմիական արդյունաբերության, շինանյութերի արդյունաբերության բնագավառներում։

Մեքենաշինության արտադրանքը 1950 թվականին 2,3 անգամ գերազանցեց 1940 թվականի արտադրանքին։ Յուրացվել են ընդհանուր նշանակություն ունեցող մետաղահատ դազգահների մոտ 250 նոր տիպեր, հատուկ և ագրեգատային դազգահների ավելի քան 1000 տիպեր և այլն։ 1950 թվականին մետալուրգիական սարքավորման արտադրությունը, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է 4,8 անգամ, շոգետուրբինններինը՝ 2,6 անգամ, էլեկտրասարքավորմանը՝ 3 անգամ, տրակտորներինը՝ 3,8 անգամ, կոմբայններինը՝ 3,6 անգամ և այլն։

Քիմիական արդյունաբերության բնագավառում հնգամյա պլանով առաջադրանք էր սահմանված նախապատերազմյան մակարդակը գերազանցել 1,5 անգամ, գերազանցված է 1,8 անգամ։ Նախապատերազմյան մակարդակը գերազանցված է նաև շինանյութերի արտադրության գծով։



Զգալի են հաջողությունները թեթև, սննդի, տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի ասպարեզներում։ Նախապատերազմյան մակարդակը գերազանցված է. բամբակյա գործվածքեղենինը 2,4 անգամ, բրդյա գործվածքեղենինը՝ 2,9 անգամ, կաշվե կոշկեղենինը՝ 3,2 անգամ և այլն։ 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, կենդանական յուղի արտադրությունը ավելացել է 57 տոկոսով, պահածոներինը՝ 48 տոկոսով։ Նախապատերազմյան մակարդակը մեկ ու կես անգամ գերազանցել են տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունները։

Աճել են ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերը։ Հայրենական առաջավոր տեխնիկայով հագեցված ձեռնարկությունների վերականգնման, վերակառուցման ու կառուցման հետևանքով հնգամյակի վերջում, 1940 թվականի համեմատությամբ, հիմնական ֆոնդերն աճել են 58 տոկոսով, ըստ որում, դազգահների պարկը նոր, ավելի կատարելա-

գործված դազգահների հաշվին ավելացել է
ավելի քան երկու անգամ։

Շարունակելով արդյունաբերության զար-
գացման անշեղ վերելքը, մեր երկիրը նոր
հաջողությունների հասավ 1951 թվականի
անցած շրջանում։ ՍՍՌՄ ամբողջ արդյունա-
բերության համախառն արտադրանքը 1951
թվականի միայն երկրորդ եռամսյակում,
1950 թվականի նույն ժամանակաշրջանի
համեմատությամբ, աճել է 16 տոկոսով։

Նոր տեխնիկայի արմատավորումը հնա-
րավորություն է տվել խթանելու ժողովրդա-
կան տնտեսության տեխնիկական զինումը,
բարձրացնելու աշխատատար և ծանր աշ-
խատանքների մեքենայացման մակարդակը։
Դրա հետ միասին տեխնիկական զինվածու-
թյունը հնարավորություն է տվել սովետա-
կան մարդկանց ավելի հաջողությամբ իրա-
գործելու իրենց նախաձեռնությունները, մը-
տահղացումները, ծավալելու աշխատանքի
սոցիալիստական ձևերը։

Կոմունիստական շինարարության ներկա
պայմաններում, արդյունաբերության և գյու-
ղատնտեսության տեխնիկական հագեցվա-
ծության հետագա վերելքի, արտադրողական
ուժերի հետագա զարգացման, կոմունիզմի
կառուցման նյութա-տեխնիկական ամուր



բազա ստեղծելու համար, հսկայական նշա-
նակություն ունեցան ստալինյան կառու-
ցումների շինարարությունները սկսելու մա-
սին Կառավարության որոշումները։

Կոմունիզմի մեծ կառուցումները հնարա-
վորություն կտան տասնյակ հարյուրավոր
կիլոմետրերի վրա էլեկտրիֆիկացնել և ավ-
տոմատացնել երկաթուղային տրանսպորտը
և արդյունաբերության բազմաթիվ ճյուղեր։
Նավարկելի ջրանցքների երկարությունը կը-
հասնի 4.500 կիլոմետրի։ Կոմունիզմի կա-
ռուցումները երկրին տարեկան կտան 22 մի-
լիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա,
այսինքն ավելի շատ, քան այժմ տալիս են
ԱՄՆ-ում գործող 30 հզոր էլեկտրակայան-
ներ։

Կոմունիզմի կառուցումների մասին Կա-
ռավարության որոշումները սովետական ժո-
ղովուրդն ընդունեց բուռն խանդավառու-
թյամբ։

Սովետական բազմազգ ժողովուրդները,
այդ թվում և հայ ժողովուրդը, մասնակցում
են կոմունիզմի կառուցումներին, ձգտելով
ապահովելու իրենց ակտիվ մասնակցությու-
նը մեր ժամանակի ամենամեծ շինարարու-
թյուններին, կոմունիստական հասարակար-
գի նյութական-տեխնիկական ամուր բազա
ստեղծելու նվիրական գործին։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձը սովետական ժողովուրդը դիմավորում է գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերած նույնքան խոշոր հաջողություններով։

Իրականացվել են հնգամյակի խնդիրները՝ նշանակալի չափով բարձրացել է բերքատվությունը, ավելացել է գյուղատնտեսական մթերքների համախառն բերքը, ավելացել է հանրային անասունների գլխաքանակը և մթերատվությունը։

Հետպատերազմյան շրջանում, սոցիալիստական տնտեսության վերականգնման ու զարգացման խնդիրները հաջողությամբ կատարելու շնորհիվ, հարստացավ գյուղատնտեսության նյութական ու տեխնիկական բազան, անհամեմատ աճեց մեքենա-տրակտորային կայանների դերը գյուղատնտեսության արտադրության մեջ։ Հնգամյակի ընթացքում պատրաստվեցին ու արտադրության մեջ աճեցին նոր որակյալ կադրեր։ Նոր ուժով դրսևորվեցին կոլտնտեսային մասսաների հիանալի հատկությունները՝ սոցիալիստական գյուղատնտեսությունը շարունակաբար առաջ մղելու, Պարտիայի և Կառավարության որոշումները, ընկեր Ստալինի ցու-



ցումները ժամանակին և անշեղորեն կատարելու ուղղությամբ։

Հետպատերազմյան շրջանում բոլշևիկների պարտիան կազմակերպեց կոլտնտեսային գյուղացիությանը, ՄՏ կայանների, սովխոզների աշխատողներին՝ պայքարելու հացահատիկի արտադրության նոր վերելքի համար։ Միայն դրա շնորհիվ հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները հնգամյակի ընթացքում ընդարձակվեցին ավելի քան 20 տոկոսով։ Հացահատիկի համախառն բերքը 1950 թվականին հասավ 7,6 միլիարդ փթի, գերազանցելով 1940 թվականի համախառն բերքը 345 միլիոն փթով։

Հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման հնգամյա պլանի առաջադրանքը, շնորհիվ նոր, ավելի կատարելագործված տեխնիկայի օգտագործման, սովետական առաջավոր ագրոբիոլոգիայի արմատավորման, գերակատարվեց։ Բերքատվությունը հնգամյակի վերջում 13 տոկոսով գերազանցեց 1940 թվականի բերքատվությանը։

Աննախընթաց հաջողություններ ձեռք բերվեցին տեխնիկական կուլտուրաների զարգացման ասպարեզում։ Այդ կուլտուրաների

ցանքատարածությունները հնգամյակի ընթացքում ավելացան 59 տոկոսով։ Խոշոր են նվաճումները հատկապես բամբակի մշակության ասպարեզում. բավական է նշել, որ հնգամյակի ընթացքում բամբակենու ցանքատարածությունները ավելացան 91 տոկոսով։ Բամբակի հումքի համախառն բերքը 1950 թվականին 650 հազար տոննայով գերազանցեց նույն ժամանակվա համար հնգամյա պլանով նախատեսված չափը։

Նույնպիսի հաջողություններ են ձեռք բերված տեխնիկական մյուս կուլտուրաների արտադրության ասպարեզում. օրինակ, հնգամյակի ընթացքում երկարաթել վուշի ցանքատարածությունն ավելացավ 90 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 57 տոկոսով, արևածաղկինը՝ 23 տոկոսով և այլն։

Հետպատերազմյան տարիներին զգալիորեն ընդարձակվեց ու ամրապնդվեց գյուղատնտեսության մեքենայացման հիմքը հանդիսացող տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինության բազան։

Հնգամյակի ընթացքում սոցիալիստական գյուղատնտեսությունը արդյունաբերությունից ստացավ՝ 15 ուժանոցի վերածած 536 հազար տրակտոր, 93 հազար հացահատիկային կոմբայն, այդ թվում 39 հազարը ինք-



նագնաց, 341 հազար տրակտորային գութան, 254 հազար տրակտորային շարքացան և այլն։

Գյուղատնտեսության վարգացմանը մեծ խթան հանդիսացան ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1947 թվականի Փետրվարյան պլենումի պատմական որոշումները։ Մի շարք միջոցառումների հետ միասին պլենումը անհրաժեշտ համարեց հացահատիկային տնտեսության մեքենայացման մակարդակը բարձրացնելու նպատակով «Առաջին հերթին տրակտորներով, կոմբայններով, գյուղատնտեսական այլ մեքենաներով ու ավտոմոբիլներով ապահովել հացահատիկային հիմնական շրջանները, մանավանդ այն շրջանները, որտեղ կոլտնտեսային ընտանիքին ընկնում են մեծ տարածությամբ վարելահողեր (Սիբիր, Հյուսիսային Ղազախստան, Պովոլժյե)»։

ՀամԿ(բ)Պ ԿԿ-ի 1947 թվականի Փետրվարյան պլենումի որոշումները անշեղորեն կատարվում են։ Երկրի կարևորագույն հացահատիկային շրջաններում հիմնական դաշտային աշխատանքների մեքենայացումն ավարտվելու մոտ է։

Մեքենայացման հետ միասին զգալի աշխատանք է տարվել կոլտնտեսությունների,

ՄՏ կայանների և սովխոզների էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Գյուղական էլեկտրակայանների կարողությունը 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, մեծացել է 2,8 անգամ։

Հայրենական Մեծ պատերազմից հետո ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման աշխատանքներում կարևոր խնդիր էր անասնաբուծության հետագա վերելքի կազմակերպումը։ Հնգամյա պլանով նախատեսված էր գերազանցել ՍՍՌՄ ամբողջ մթերատու անասնաբուծության գլխաքանակի նախապատերազմյան մակարդակը։

Հնգամյա պլանի կենսագործմամբ, սոցիալիստական անասնաբուծությունը հասավ նոր, ավելի բարձր մակարդակի։ 1950 թվականի վերջերին կոլտնտեսություններն ունեին խոշոր եղջերավոր անասուն 40 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, 63 տոկոսով ավելի ոչխար և այծ, 49 տոկոսով ավելի խոզ, 2 անգամ ավելի թռչուն։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, ինչպես նաև անասնաբուծության մթերատվության, անասունների գլխաքանակի աճման բարձր ցուցանիշների համար 1950 թվականին Սոցիալիստական



Աշխատանքի Հերոսի կոչում շնորհվեց հարյուրավոր կոլտնտեսականների և գյուղատնտեսության այլ աշխատողների։ Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով պարգևատրվեց ավելի քան հարյուր հազար մարդ։

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման համար խոշոր որոշիչ դեր խաղացին վերջին տարիների՝ Պարտիայի ու Կառավարության մի շարք որոշումները։

1948 թվականին ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը ընդունեցին դաշտապաշտպան անտառաշերտեր տնկելու, խոտադաշտային ցանքաշրջանառություններ արմատավորելու, լճակներ և ջրամբարներ կառուցելու պլան, որը հաջողությամբ կատարվում է։

Հանրային անասնաբուծության զարգացման ասպարեզում մեծ դեր խաղացին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումները, ինչպես նաև ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ու ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ 1949—1951 թվականներին կոլտնտեսային ու սովխոզային հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանի մասին։

Հետպատերազմյան շրջանում կոլտնտե-

ությունների խոշորացումը նշանակալից երևույթ հանդիսացավ։ Այդ հանգամանքը հնարավորություն տվեց մի նոր աստիճանի հասցնելու սոցիալիստական գյուղատնտեսության մեքենայացումը, գյուղատնտեսության մեջ գիտության խոսքը անարգել կերպով ներդնելու, կոլտնտեսությունները տնտեսապես-կազմակերպչորեն է՛լ ավելի ամրապնդելու։

1950 թվականին ընկեր Ստալինի նախաձեռնությամբ կոմունիզմի մեծ կառուցումների մասին ընդունված պատմական որոշումները անսահման հեռանկարներ բացեցին գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման համար։

Կոմունիզմի կառուցումներով ջրովի և ոռոգելի կդառնա 28 միլիոն հեկտար տարածություն, դրանով ՍՍՌՄ-ն կստանա ավելի քան կրկնակի բերք։ Միայն Սարպինսկի և Նողայական տափաստաններից կհավաքվի 5 միլիոն տոննա խոտ, այդ վայրերը կդառնան ոչխարաբուծության համաշխարհային կենտրոն, գերազանցելով Ավստրալիային։ Կարա-Կումի անապատը, որ մեծ է մեկ և կես անգամ Մեծ Բրիտանիայից, կոմունիզմի կառուցումների շնորհիվ կվերափոխվի։ Այնտեղ, անծայրածիր տարածությունների



վրա կաճի բամբակենին, կծաղկեն ավելի քան 200 տեսակի մերձարևադարձային կուլտուրաներ։

Կոմունիզմի կառուցումները կստեղծեն առատություն, կաճի և կամրապնդվի կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազան։

***

Սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության բուռն զարգացման հիման վրա տարեց-տարի է՛լ ավելի է բարելավվում մեր երկրի աշխատավորության նյութական ու կուլտուրական կենսամակարդակը։

Հնգամյակի վերջին տարում, 1940 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ-ում ազգային եկամուտը ավելացել է 64 տոկոսով։

Հայտնի է, որ այժմ կապիտալիստական երկրներում ազգային եկամտի կեսից ավելին գնում է մոնոպոլիստների անձնական տրամադրության տակ, իսկ մնացորդի զգալի բաժինը կապիտալիստական կառավարողները տրամադրում են սպառազինությունների մրցավազքին, աշխատավորության ուսերին մոնոպոլիստների շահագործման լուծը անխախտ պահելու նպատակներին։

Հակառակ դրան, ՍՍՌՄ-ում 1950 թվակա-

նին ազգային եկամտի 74 տոկոսը տրամադրվել է աշխատավորության նյութական ու կուլտուրական կարիքներին։ Ազգային եկամտի մնացած 26 տոկոսը պետությունը տրամադրել է արդյունաբերության ընդլայնմանը, կոլտնտեսություններին և կոոպերատիվ կազմակերպություններին՝ նրանց աշխատանքները ծավալելու, ինչպես նաև համապետական և հասարակական այլ կարիքների բավարարմանը։

Հայտնի է, որ կապիտալիստական աշխարհում սպառազինությունների մրցավազքը մոնոպոլիստներին բերում է նորանոր շահույթներ, իսկ աշխատավորությանը՝ աղքատության աճ։ Պրոֆմիությունների Համաշխարհային Ֆեդերացիայի տվյալներով մոնոպոլիաների շահույթները ԱՄՆ-ում 1951 թվականին հասան 50 միլիարդ դոլլարի և այդ այն դեպքում, երբ մամուլում հրապարակված ԱՄՆ-ի Աշխատանքի մինիստրության աշխատանքային վիճակագրության բյուրոյի ակնհայտորեն իջեցված տվյալների համաձայն, վերջին տարիների ընթացքում սննդամթերքների և առաջին անհրաժեշտության առարկաների գները ԱՄՆ-ում բարձրացել են ավելի քան երկու անգամ։



Հակառակ այս դրության, ՍՍՌՄ-ում մասսաների նյութական բարեկեցության անշեղ վերելքը հանդիսանում է ժողովրդական տնտեսության զարգացման անպայման օրենքը։

1947 թվականի դեկտեմբերին անցկացված դրամական ռեֆորմը, պարենային, արդյունաբերական բոլոր ապրանքների քարտային սիստեմի վերացումը, 1947—1951 թվականներին չորս անգամ կատարված գների իջեցումը զգալիորեն բարձրացրեցին բանվորների, ծառայողների ռեալ աշխատավարձը, կոլտնտեսականներին հնարավորություն տվեցին գնելու ավելի էժան արդյունաբերական ապրանքներ։ Բանվորների, ծառայողների, կոլտնտեսականների եկամուտների ընդհանուր գումարը 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճեց 62 տոկոսով։

Ժողովրդական տնտեսության ծաղկման, աշխատավորության նյութական, կուլտուրական մակարդակի բարձրացման մասին է խոսում այն փաստը, որ բանվորների և ծառայողների թիվը 1950 թվականի վերջերին հասավ 39 միլիոն 200 հազար մարդու, այսինքն 7 միլիոն 700 հազարով ավելի, քան 1940 թվականին։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական աշխարհում աշխատավորության շրջանում մոլեգնում են հիվանդությունները, քաղցը, երբ սոցիալական ապահովագրությունից զուրկ մարդիկ մղվում են գետնախորշերը, ՍՍՌՄ-ում միայն 1950 թվականին աշխատավորությանը, որպես սոցիալական ապահովագրություն՝ սանատորիաների, հանգստյան տների ուղեգրեր ձեռք բերելու, բազմազավակ և միայնակ մայրերին նպաստ, ձրի բժշկություն և այլն, տրվել է ավելի քան 120 միլիարդ ռուբլի, այսինքն երեք անգամ ավելի, քան 1940 թվականին։

Դրա հետ միասին հնգամյակի տարիներին կառուցվել ու վերանորոգվել են ավելի քան 100 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, գյուղական վայրերում վերանորոգվել ու կառուցվել են ավելի քան 2 միլիոն 700 հազար բնակելի տուն։

Սովետական ժողովուրդը Հոկտեմբերյան Մեծ տոնը դիմավորում է գիտության, արվեստի ու կուլտուրայի բնագավառներում ունեցած մեծամեծ հաջողություններով։ Բավական է նշել, որ գիտության, տեխնիկայի, գրականության և արվեստի ասպարեզներում աչքի ընկնող աշխատանքների, գյուտերի և



նվաճումների համար հնգամյակի տարիներին Ստալինյան Մրցանակի Լաուրեատի կոչման են արժանացել վեց հազար հինգ հարյուր մարդ։

Սովետական առաջավոր գիտությունը 1950 թվականին հարստացավ ընկեր Ստալինի «Մարքսիզմը և լեզվաբանության հարցերը» հանճարեղ աշխատությամբ։ Այդ աշխատությունը թեորիական նոր դրույթներով զինեց մեր կադրերին և դարձավ սովետական առաջավոր գիտության հետագա զարգացման ուղենիշը։

Խոշոր են ձեռք բերված հաջողությունները ուսման բնագավառում։ Հնգամյակի ընթացքում մեր երկիրը պատվեց ուսումնական, գիտահետազոտական հաստատությունների խիտ ցանցով։ Մասնագիտական դպրոցներում և տեխնիկումներում սովորողների թիվը հնգամյակի ընթացքում ավելացավ 8 միլիոնով և 1950 թվականին հասավ 37 միլիոնի։

Բոլշևիկների պարտիայի քաղաքականության շնորհիվ մեր երկիրը դարձել է համատարած գրագիտության երկիր, առաջավոր գիտության, գրականության և արվեստի երկիր։ Սովետական Միության մարդկանց է պատկանում համաշխարհային ռեկորդների մեծ մասը, ժամանակակից գիտության ա-

մենախոշոր հայտնագործությունները։ Թերթերի, ժուռնալների, գրքերի տիրաժը մի քանի անգամ գերազանցում է կապիտալիստական ցանկացած երկրի, կամ մի խումբ երկրների՝ միասին վերցրած, հրատարակչության տիրաժից։ Ռադիոն, էլեկտրականությունը մտել են աշխատավորության կենցաղի մեջ։ Ստեղծվել է կոմունիստական հասարակարգ կառուցող մարդկանց համար նյութական, կուլտուրական բարեկեցիկ կյանք։

***

Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում, Լենինի—Ստալինի ազգային քաղաքականության շնորհիվ, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձը նշանակալից հաջողություններով է դիմավորում նաև հայ ժողովուրդը։

Հետպատերազմյան հնգամյակը ռեսպուբլիկայում կատարվեց նախատեսված ժամկետից շուտ։ Դեռ 1950 թվականի երկրորդ կիսամյակում գերազանցվեց արդյունաբերական արտադրության հնգամյա պլանով առաջադրված մակարդակը։ Հնգամյա պլանով նախատեսված էր, որ Հայկական ՍՍՌ արդյունաբերության արտադրանքը, 1940 թվի



համեմատությամբ, պետք է ավելանար 210 տոկոսով, փաստորեն ավելացել է 241 տոկոսով։

Հետպատերազմյան շրջանում առանձնապես նշանակալից են ռեսպուբլիկայի արդյունաբերական առաջատար ճյուղերի՝ էլեկտրաարդյունաբերության, մետաղամշակման, մեքենաշինության, դազգահաշինության նվաճումները։

Գործող հիդրոէլեկտրակայանների կարողությունն ավելացնելու, Սևանի հիդրոէլեկտրակայանը գործարկելու շնորհիվ էլեկտրաէներգիայի արտադրությունը 1950 թվականին նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 2,4 անգամ։

Հնգամյակի ընթացքում կառուցվեցին և շահագործման հանձնվեցին 50-ից ավել արդյունաբերական ձեռնարկություններ, որոնց թվում՝ կաբելի, էլեկտրամեքենաշինական, հիդրոտուրբինների, ավտոնորոգման, ճըշգրիտ էլեկտրասարքերի և այլ խոշոր ձեռնարկություններ։

Նոր հնգամյակի ընթացքում Հայկական ՍՍՌ-ում ստեղծվեց էլեկտրոլիտային պղնձի, ալյումինի, կաբելի, գեներատորների, տրանսֆորմատորների, հիդրոտուրբինների, կոմպրեսորների, մետաղահատ դազ-

դաՀների, ավտոմոբիլային և տրակտորային պաՀեստի մասերի, ժամացույցների, էլեկտրաչափիչ սարքերի արտադրությունը։

Նախապատերազմյան մակարդակը գերազանցել են նաև շինանյութերի արտադրության ճյուղերը։ Կազմակերպվել է մի շարք շինանյութերի նոր արտադրությունը։

Հետպատերազմյան շրջանում լուրջ հաջողություններ ունի Հայաստանի թեթև արդյունաբերությունը։ Հնգամյակի ընթացքում կառուցվել ու գործարկվել են մաՀուդի, գուլպայի ֆաբրիկաները, տրիկոտաժի 2 ֆաբրիկա, կառուցվել են կամվոլի կոմբինատը և մետաքսագործվածքային ֆաբրիկան։

Ակնբախ են ռեսպուբլիկայի սննդարդյունաբերության, տեղական արդյունաբերության հաջողությունները։ Բավական է նշել, որ կոնսերվի արդյունաբերությունը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 80 տոկոսով, կենդանական յուղինը՝ 24 տոկոսով և այլն։ Կառուցվել են շաքարի, մսեղեն և ձկնեղեն կոնսերվների արտադրության ձեռնարկություններ։ Գործարկվել են տեղական արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ, այդ թվում մեքենաշինական, նորոգման-մեխանիկական, Հախճապակու, լաքի ու ներկի գործարանները, կաՀույքի ֆաբրիկան։



Աննախընթաց են Հայաստանի աշխատավորների հաջողությունները գյուղատնտեսության բնագավառում։ 1950 թվականին հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը 53 տոկոսով ավելի բարձր էր, քան 1940 թվականին, համախառն բերքը կոլտնտեսություններում 43 տոկոսով գերազանցեց 1940 թվականի մակարդակը։ Տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունը հնգամյակի ընթացքում ավելացավ 17 տոկոսով։ Անասունների գլխաքանակը կոլտնտեսություններում 1950 թվականին նախապատերազմյանից գերազանցեց 27 տոկոսով։

Աճել է գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը։ Ռեսպուբլիկայի տրակտորային պարկի կարողությունը ավելացել է 2 անգամ։ ՄՏ կայանները 1950 թվականին կատարել են 45 տոկոսով ավելի գյուղատնտեսական աշխատանք, քան 1940 թվականին։

Հնգամյակի ընթացքում էլեկտրիֆիկացված կոլտնտեսությունների թիվը ավելացել է 3 անգամ։

Մեծ են հաջողությունները իրրիգացիոն

շինարարության բնագավառում: Կառուցվել և գործարկվել են Ստորին Զանգվի ջրանցքի առաջին հերթը, Կոտայքի ջրհան կայանը, Արփա լճի ջրավազանը: Աշխատանք է կատարվում մի շարք այլ ջրանցքների, ճահճակալած հողերի չորացման և յուրացման ուղղությամբ:

Արդյունաբերության, գյուղատնտեսության, ինչպես նաև կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք բերված հաջողությունների հետևանքով բարձրացել է աշխատավորության կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակը:

Բանվորների և ծառայողների թիվը Հայկական ՍՍՌ-ում 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է 90 հազարով, իսկ աշխատավարձի ֆոնդը 177 տոկոսով:

Զգալիորեն աճել է աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման համար պետական հատկացումների չափը:

Տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում, 1940 թվականի համեմատությամբ, 1950 թվականին սովորողների թիվը ավելացել է 50 հազարով, բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 4 հազարով: Ժողովրդական տնտեսությունը



հնգամյակի ընթացքում ստացել է 6 հազար մասնագետ՝ բարձրագույն և 8 հազար մասնագետ՝ միջնակարգ կրթությամբ:

Գիտահետազոտական ինստիտուտների ցանցը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 1,6 անգամ, գիտական աշխատողների թիվը աճեց 2,5 անգամ: Քաղաքում և գյուղում 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, մասսայական գրադարանների թիվը ավելացել է 46 տոկոսով, կինոսարքերի թիվը՝ 2 անգամ, հրատարակված գրքերի ընդհանուր տիրաժը՝ 73 տոկոսով:

Հետպատերազմյան շրջանում հատկապես լայն ծավալ ստացավ բնակարանային շինարարությունը: Պետական վարկի օգնությամբ ռեսպուբլիկայում կառուցվել են 1 միլիոն 85 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, բացի այդ, գյուղական վայրերում կառուցվել են 15 հազար բնակելի տներ:

Սովետական Հայաստանի տնտեսության, կուլտուրայի և գիտության ասպարեզներում ձեռք բերված հաջողությունները արդյունք են բոլշևիկների պարտիայի և Սովետական կառավարության լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության, ընկեր Ստալինի հայրական ջերմ հոգատարության:

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձը նշանավորվում է ամբողջ աշխարհում խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերի հզոր վերելքի պայմաններում։

Սովետական Միության անմիջական օգնությամբ կապիտալիստական շղթաներից ազատագրված Կենտրոնական և Հարավ-արևելյան Եվրոպայի ժողովուրդները, հաստատելով իրենց երկրներում ժողովրդա-դեմոկրատական կարգեր, աննախընթաց հաջողություններ ձեռք բերեցին ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում։ Հենվելով իրենց սեփական ուժերի և Սովետական Միության եղբայրական, անշահախնդիր օգնության վրա, ժողովրդական դեմոկրատիայի երկրները հաջողությամբ լուծում են հնգամյա և վեցամյա պլանների կատարման՝ սոցիալիզմի հիմքերի կառուցման խնդիրները։

Լեհաստանը, Սովետական Միության օգնությամբ գերմանա-ֆաշիստական զավթիչներից ազատագրվելուց հետո, հաղթահարել է հսկայական դժվարություններ և ժամկետից շուտ՝ 2 տարի 10 ամսում կատարել է ժողովրդական տնտեսության վերականգ-



նման եռամյա պլանը։ Վեցամյա պլանը, որի իրականացումն սկսվել է 1950 թվականի սկզբից, հանդիսանում է Լեհաստանի տնտեսության զարգացման և սոցիալիզմի հիմքերի շինարարության պլան։ Ներկայումս Լեհաստանում կառուցվում են 296 խոշոր և 727 միջին արդյունաբերական ձեռնարկություններ։ Վեցամյակի վերջում Լեհաստանը կարդյունահանի հարյուր միլիոն տոննա ածուխ։ Արդյունաբերական արտադրության ծավալը 1955 թվականին կգերազանցի նախապատերազմյան մակարդակը չորս անգամ։

Արագ տեմպերով է ընթանում սոցիալիստական ինդուստրացումը նաև ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրներում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիստական ինդուստրացման հետ մեկտեղ կատարվում է գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումը։ Գյուղատնտեսությունը աստիճանաբար անցնում է աշխատանքի ավելի բարձր արտադրողականության կոլեկտիվ ձևին։ Տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում ժողովրդական դեմոկրատիայի երկրների ձեռք բերած հաջողություններն ու նվաճումները վառ վկայությունն են այն բանի, թե ինչպիսի հիանալի հեռանկարներ են բացվում

այն ժողովուրդների առջև, որոնք իրենց ուսերից թոթափել են կապիտալիստական լուծը և կանգնել են սոցիալիզմի ուղու վրա։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների հաջողությունները առանձնապես ակնառու են Հարավսլավիայի տնտեսական կատաստրոֆիկ անկման ֆոնի վրա։

Թե որքան կործանարար եղավ Տիտոյի ֆաշիստական կլիկի քաղաքականությունը հարավսլավական ժողովրդի համար, երևում է շվեդական «Մուդովենսկա դագբլադեթ» բուրժուական թերթի վերջերս հրապարակած Բելգրադի՝ իր թղթակցի ուղարկած նամակից։ Թղթակիցը պատմում է, որ Հարավսլավիայում ամեն ինչ խիստ նորմայավորված է, շատ ապրանքներ ու մթերքներ չկան։ Մսի կիլոգրամի արժեքը հավասար է բանվորի մեկ ամսվա աշխատավարձի չափին, թուղթ ու ծրար գավառներում հնարավոր չէ ձեռք բերել, մատիտ և տետրակ ոչ մի տեղ չկա։ Ճաշ հնարավոր չէ գնել նույնիսկ դաշտնի ճանապարհով։

Այս բոլորից հետո պատահական չէ, որ վերջերս Հարավսլավիայում բռնկվեցին գյուղացիական հուզումներ, ահաբեկելով տիտոյական կլիկին։

Հակառակ Հարավսլավիայում տիրող դը-



րության, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները հսկայական ոգևորությամբ նվիրաբերում են իրենց ուժերը սոցիալիստական հասարակարգի հիմքերի կառուցման գործին, զգոնությամբ պաշտպանում են ռևոլյուցիայի նվաճումները ամերիկա-անգլիական իմպերիալիստների ոտնձգություններից և համառ պայքար են մղում խաղաղության պահպանման ու ամրապնդման համար։

Օգտագործելով Սովետական պետության հարուստ փորձը և հենվելով ՍՍՌՄ տնտեսական օգնության վրա, չին ժողովուրդը հաջողությամբ հաղթահարում է տնտեսական դժվարությունները. և է՛լ ավելի է զարգացնում երկրի ժողովրդական տնտեսությունը։ Իր գոյության երկու տարվա ընթացքում Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան հասել է վիթխարի հաջողությունների։ Զգալիորեն ավելացել է չուգունի և պողպատի արդյունաբերությունը, ավելացել է ածխի հանույթը, ընդլայնվում է մեքենաշինական արդյունաբերությունը։ Մինչև օրս կալվածատիրական հողերը գյուղացիների միջև բաժանվել է 290 միլիոն բնակչություն ունեցող շրջաններում։ Ագրարային ռեֆորմը 1952 թվականին կավարտվի ամբողջ Չինաս-

տանում, բացառությամբ այն շրջանների, որտեղ բնակվում են ազգային փոքրամասնություններ։ Հողային ռեֆորմի հետևանքով երկրում հացահատիկային կուլտուրաների ընդհանուր բերքը 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, ավելացավ 14 տոկոսով։ Բամբակի բերքը 1950 թվականին հասավ 700 հազար տոննայի։

Նոր ժողովրդական Չինաստանը հանդիսանում է խաղաղության համար ակտիվ և հզոր մարտնչող։ Չին ժողովրդի խաղաղասիրական քաղաքականությունը խոշոր հարված է հասցնում ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ պլաններին Հեռավոր Արևելքում։ Խաղաղության գործի համար մղվող պայքարի կարևորագույն ակտ հանդիսացավ սովետա-չինական պայմանագրի կնքումը, որն է՛լ ավելի ամրապնդեց սովետական և չինական ժողովուրդների եղբայրական անխախտ դաշինքը։ «Տարակույս չի կարող լինել,— նշում է ընկեր Ստալինը,— որ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հետ Սովետական Միության անխախտ բարեկամությունը ծառայում է և կծառայի Հեռավոր Արևելքում խաղաղության ապահովման գործին ընդդեմ բոլոր և ամեն տեսակի ագրեսորների ու պատերազմի հրձիգների»։



Կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում, մեծ նշանակություն ունի Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ամրապնդումը։ Ընկեր Ստալինը բարձր գնահատեց Ռեսպուբլիկայի հիմնադրման ակտի պատմական նշանակությունը։ Պրեզիդենտ Վիլհելմ Պիկին և Պրեմյեր Մինիստր Օտտո Գրոտևոլին ուղարկած ողջույնի հեռագրի մեջ ընկեր Ստալինը նշեց. «...Հիմք դնելով միասնական, դեմոկրատական և խաղաղասեր Գերմանիայի համար, դուք, դրա հետ միասին, մեծ գործ եք կատարում ամբողջ Եվրոպայի համար, ապահովելով նրան կայուն խաղաղություն»։ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան իր գոյության երկու տարվա ընթացքում ձեռք է բերել խոշոր հաջողություններ տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։ Ժամկետից շուտ կատարելով և գերակատարելով ժողովրդական տնտեսության զարգացման 1949—50 թվականների երկամյա պլանը, ռեսպուբլիկայի ժողովրդական մասսաները մեծ ոգևորությամբ կենսագործում են գերմանական ժողովրդի համար բացառիկ կարևոր 1950—1955 թվականների հնգամյա պլանը։ Հնգամյակի վերջում ժո-

ղովրդական եկամուտը 60 տոկոսով կգերազանցի 1950 թվականի մակարդակը։ Այն ժամանակ, երբ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի խաղաղ էկոնոմիկան ընթանում է ծաղկման ուղիով, Արևմտյան Գերմանիայում, Բոննի «կառավարության» վերասպառազինման քաղաքականության հետևանքով, ավելի ու ավելի են կրճատվում արդյունաբերության խաղաղ արտադրանք տվող ճյուղերը, տեղի է ունենում ժողովրդական մասսաների կենսամակարդակի անընդհատ վատթարացում։ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ձեռք բերած խոշոր հաջողությունները ոգեշնչում են խաղաղասեր, դեմոկրատական և միասնական Գերմանիա ստեղծելու համար պայքարող գերմանական միլիոնավոր ու միլիոնավոր մարտիկներին։

Խաղաղության գործի համար մղվող պայքարում կարևոր նշանակություն ունեն ազգային ազատագրական շարժումները գաղութային և կախյալ երկրներում։ Ամերիկա-անգլիական ինտերվենտները մեկ տարուց ավելի է, ինչ ագրեսիվ պատերազմ են մղում հերոսական կորեական ժողովրդի դեմ, բարբարոսական ռմբակոծությունների են ենթարկում Կորեայի քաղաքներն ու գյուղե-



րը, ոչնչացնում են խաղաղ բնակչությանը։ Հասարակական կարծիքի ճնշման տակ ըստիպված լինելով բանակցություններ սկսել զինադադարի մասին, ամերիկա-անգլիական իմպերիալիստները արդեն երրորդ ամիսն է, ինչ շարունակ կազմակերպում են լկտի պրովակացիաներ և ձախողում են այդ բանակցությունները։

Ազգային ազատագրության և դեմոկրատիայի համար մղվող պայքարում խոշոր հաջողությունների է հասել Վյետնամի ժողովուրդը, որն իմպերիալիստական ճնշումից արդեն ազատագրել է երկրի տերիտորիայի մեծ մասը և նոր պարտությունների է մատնում ֆրանսիական գաղութարարներին։ Իմպերիալիստական ճնշման դեմ ակտիվ զինված պայքար են մղում Մալայայի, Բիրմայի, Ֆիլիպինների ժողովուրդները։ Ազգային ազատագրական շարժումը սկսում է ակտիվանալ Հնդկաստանում, ծավալվում է Իրանի, Եգիպտոսի ժողովուրդների պայքարը անգլիական ու ամերիկյան իմպերիալիստներին իրենց երկրից դուրս քշելու համար։

Այսպիսով, գաղութային և կախյալ երկրները իմպերիալիզմի ռեզերվից վերածվում են խաղաղության ու դեմոկրատիայի համար մղվող պայքարի հզոր ուժի։

***

Ներկայումս նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստությունը ամերիկյան իմպերիալիզմի և նրա արբանյակների կողմից տարվում է բոլոր գծերով՝ ռազմական, տնտեսական, քաղաքական և իդեոլոգիական։ Միայն Ամերիկայի Միացյալ Նահանգներում զենքի տակ պահվում է ավելի քան 3,5 միլիոն մարդ։ Ներկայումս ԱՄՆ-ը ունի 500-ից ավելի ռազմական բազաներ, որոնց ստրատեգիական տեղադրումը պարզորեն ասում է, որ դրանք ստեղծված են ՍՍՌՄ-ի և Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների ու Չինաստանի վրա հարձակվելու նպատակով։

Միացյալ Նահանգներում և նրանց հրամանով առանձնապես Ատլանտյան բլոկի երկրներում տեղի է ունենում սպառազինությունների անզուսպ մրցավազք։ Սպառազինությունների կատաղի մրցավազքը, որպես ծանր բեռ, ընկնում է կապիտալիստական երկրների աշխատավոր մասսաների վրա։ Բանվորների ռեալ աշխատավարձը ԱՄՆ-ում 1949 թվականին կազմել է նախապատերազմյան մակարդակի 75—80 տոկոսը, իսկ



Կորեայում պատերազմն սկսելուց հետո այն է՛լ ավելի է իջել։ 1951 թվականի միայն առաջին 40 օրում Անգլիայում բարձրացվել են պարենային և արդյունաբերական ապրանքների 40 տեսակների գները։ Ֆրանսիայում մթերքների գները 20 անգամ գերազանցում են նախապատերազմյանից։ Է՛լ ավելի վատ է աշխատավորների վիճակը Իտալիայում, Թյուրքիայում, Իսպանիայում, Հունաստանում, Հարավսլավիայում և այլն։

Ամերիկա-անգլիական բլոկի ամբողջ քաղաքականությունն ուղղված է նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստման ու հրահրման նպատակին։ Խաղաղության պահպանության ամրապնդման համար ստեղծված Միավորված Ազգերի Կազմակերպությունը վերածվում է ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության գործիքի, նոր պատերազմի հրահրման գործիքի։ Ամերիկյան իմպերիալիստները կազմակերպել են Հյուսիս-ատլանտյան ռազմական դաշինքը, որն ուղղված է խաղաղության և բոլոր երկրների ազատության ու անկախության դեմ։ Ամերիկյան իմպերիալիստները անց են կացնում Արևմտյան Գերմանիայի վերառազմականացումը։ Այդ նպատակին են ուղղված Վաշինգտոնի թելադրանքով և

ֆրանսիական կառավարության կողմից ա-
ռաջադրված «Շումանի պլանը» և «Պլևենի
պլանը»։ Այդ պլանների համաձայն վերա-
կանգնվում է գերմանական միլիտարիզմը և
Արևմտյան Գերմանիայի ռազմաարդյունա-
բերական պոտենցիալը։ Ամերիկա-անգլիա-
կան իմպերիալիստների կողմից վերառազ-
մականացվում է նաև Ճապոնիան։ Ինչպես
հայտնի է, սեպտեմբերի 8-ին, Սան-Ֆրան-
ցիսկոյում ստորագրվեց սեպարատ հաշտու-
թյան պայմանագիր Ճապոնիայի հետ, որը
Սովետական Միության կողմից բնորոշվեց,
որպես նոր պատերազմի նախապատրաստ-
ման պայմանագիր։ Այսպիսով, ամերիկյան
իմպերիալիստները պատերազմի պլաց-
դարմներ են ստեղծում Եվրոպայի և Ասիայի
խաղաղասեր ժողովուրդների դեմ։

Նոր համաշխարհային պատերազմի սպառ-
նալիքը աշխարհի բոլոր խաղաղասեր ժողո-
վուրդներից պահանջում է է՛լ ավելի համա-
խմբված ու վճռականորեն պայքարել պա-
տերազմի հրձիգների դեմ։ Միայն ժողո-
վուրդների վճռական պայքարը խաղաղու-
թյան համար կարող է կանխել նոր պատե-
րազմը և ամրապնդել ժողովուրդների միջև
ընդհանուր անվտանգությունն ու բարեկա-
մությունը։ «Խաղաղությունը կպահպանվի և



կամրապնդվի,— մատնանշում է ընկեր
Ստալինը,— եթե ժողովուրդները խաղա-
ղության պահպանման գործը վերցնեն իրենց
ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ։ Պատե-
րազմը կարող է դառնալ անխուսափելի, եթե
պատերազմի հրձիգներին հաջողվի կեղծի-
քով մոլորեցնել ժողովրդական մասսանե-
րին, նրանց խաբել և նրանց ներգրավել հա-
մաշխարհային նոր պատերազմի մեջ»։

Ժողովուրդների անվտանգության և խա-
ղաղության համար մղվող պայքարի ավան-
գարդում ընթանում է Սովետական Մեծ տե-
րությունը՝ պրոգրեսիվ մարդկության հույսն
ու հպարտությունը, խաղաղության հենա-
րանն ու դրոշակակիրը։ Սովետական Միու-
թյունը հետևողականորեն վարում է բոլոր
երկրների հետ խաղաղ համագործակցու-
թյան քաղաքականություն։ Սովետական
Միության խաղաղասիրական քաղաքականու-
թյունը բխում է սովետական ժողովրդի ար-
մատական շահերից։ Սովետական կառավա-
րության առաջին ակտերից մեկը, որն ընդուն-
վեց 1917 թվականի հոկտեմբերյան հայտնի
պատմական գիշերը, Լենինի կողմից գրված
դեկրետն էր խաղաղության մասին։ Այդ ժա-
մանակվանից սկսած մինչև մեր օրերը Սո-
վետական Միությունը անվերապահորեն

պաշտպանում է խաղաղության գործն ամբողջ աշխարհում։

Սովետական կառավարությունը, անշեղորեն վարելով խաղաղասիրական ստալինյան արտաքին քաղաքականություն, պատերազմի ավարտումից հետո, 1946 թվականին առաջարկեց իրականացնել սպառազինությունների ընդհանուր կրճատում, արգելել ատոմային զենքի արտադրությունը և նրա օգտագործումը ռազմական նպատակների համար։ Սովետական կառավարությունը երկու անգամ դիմեց, որպեսզի Ամերիկայի Միացյալ Նահանգները, Սովետական Միությունը, Մեծ Բրիտանիան, Չինաստանը և Ֆրանսիան միավորեն իրենց ուժերը և միջազգային խաղաղության ու անվտանգության նպատակով կնքեն խաղաղության պակտ։ Սովետական Միությունը առաջինը հանդես եկավ և իր բողոքի ձայնը բարձրացրեց Կորեայում ամերիկյան իմպերիալիզմի կողմից զինված ինտերվենցիայի դեմ։

Սովետական կառավարության խաղաղասիրական քաղաքականությունը համաժողովրդական հավանություն է գտնում ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդների կողմից։ Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի վերջին պլենումը միահամուռ կերպով պաշտպանեց հինգ



մեծ տերությունների՝ ԱՄՆ-ի, Անգլիայի, Չինաստանի, Ֆրանսիայի և ՍՍՌՄ-ի միջև խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը։

Մինչև այս տարվա հոկտեմբերի 10-ը հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ ստորագրել են 96.729.946 սովետական քաղաքացիներ։ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ ստորագրությունների հավաքման հաջող ընթացքը ՍՍՌՄ-ում հանդիսանում է սովետական ժողովրդի բարոյաքաղաքական միասնության, բոլշևիկների պարտիայի, Սովետական կառավարության, խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինի նկատմամբ նվիրվածության հզոր ցույց։

Ստորագրությունների հավաքման կամպանիայի արդյունքները նոր ուժով դրսևորեցին այն փաստը, որ Սովետական Միությունում ժողովուրդը և կառավարությունը միասնական են կայուն խաղաղության համար մղվող պայքարում։

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի

Դիմումի տակ սովետական մարդկանց դրած ստորագրությունների մեջ աշխարհի ժողովուրդները տեսնում են խաղաղության գործը պաշտպանելու ուղղությամբ սովետական ժողովրդի հաստատ վճռականության նոր, վառ ապացույցը։

Սովետական մարդիկ, միահամուռ ստորագրելով Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ, այդ ստորագրությունները ամրապնդում են իրենց աշխատանքային նոր սխրագործություններով։ ՍՍՌՄ ժողովուրդները իրենց բոլոր ուժերը, իրենց ամբողջ եռանդը նվիրաբերում են խաղաղ կոմունիստական շինարարության գործին։ Սովետական մարդիկ հասկանում են, որ ինչքան ավելի ուժեղ լինի Սովետական Միությունը, այնքան ավելի նշանակալից կլինի նրա դերը միջազգային ասպարեզում, այնքան ավելի հուսալի կլինի խաղաղության գործը։

Ատոմային զենքի վերաբերյալ «Պրավդա»-ի թղթակցի հարցերին տված ընկեր Ի. Վ. Ստալինի պատասխանում պարզ կերպով նշվում է, որ ամերիկա-անգլիական ագրեսիվ բլոկի հարձակումից մեր երկիրը պաշտպանելու հանգամանքը «Սովետական Միությանն ստիպեց ունենալ ատոմային



զենք՝ ագրեսորներին լիակատար պատրաստությամբ դիմավորելու համար։

Իհարկե, ագրեսորներն ուզում են, որպեսզի Սովետական Միությունն անզեն լինի՝ իր վրա նրանց հարձակման դեպքում։ Բայց Սովետական Միությունը դրան համաձայն չէ և կարծում է, որ ագրեսորին պետք է դիմավորել լիակատար պատրաստությամբ»։

Ընկեր Ստալինի խոսքերը մեկ անգամ ևս համաշխարհային հասարակական կարծիքին ցույց տվին, թե ինչպիսի հսկայական ուժ, ինչպիսի անպարտելի հզորություն է ներկայացնում իրենից խաղաղության պատվար Սովետական Միությունը, ուժերի ինչպիսի գերազանցություն ունի հակաիմպերիալիստական ճամբարը պատերազմի ճամբարի նկատմամբ։ Ստալինյան խոսքերն ահեղ նախազգուշացնում են պատերազմի հրձիգներին և կոչ են անում խաղաղության պաշտպաններին՝ է՛լ ավելի ուժեղացնել իրենց պայքարը։ Այդ խոսքերը հաստատուն հավատ են ներշնչում խաղաղության հաղթանակի նկատմամբ։

***

Սովետական Միությունն իր ամբողջ արտաքին ու ներքին քաղաքականությամբ ամրապնդում է խաղաղությունը։ Սովետական

սոցիալիստական պետության՝ ամբողջ աշխարհում խաղաղության պատվարի հզորության հետագա ամրապնդման համար անհրաժեշտ է, որպեսզի Սովետական երկրի աշխատավորները է՛լ ավելի համառորեն պայքարեն արդյունաբերության մեջ արտադրական պլանների կատարման ու գերակատարման համար, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, արտադրանքի որակի բարձրացման ու ինքնարժեքի իջեցման, արտադրության և շինարարության մեջ խստիվ տնտեսում պահպանելու համար։

Գյուղատնտեսության բնագավառում անհրաժեշտ է մոբիլիզացնել աշխատավորության ողջ ուժերը կոլտնտեսությունների կազմակերպական-տնտեսական ամրապնդման, բարձր ու կայուն բերքի ստացման, հանրային անասնաբուծության գլխաքանակի ավելացման և մթերատվության բարձրացման, բնության վերափոխման պլանի կենսագործման, մեր երկրում պարենամթերքի և արդյունաբերության համար հումքի առատություն ստեղծելու համար։

Գիտության և կուլտուրայի աշխատողները պետք է իրենց ստեղծագործական ունակությունների ուղղեն սոցիալիստական կուլ-



տուրայի, գիտության, արվեստի, ժողովրդական կրթության և առողջապահության գործին, սովետական առաջավոր գիտության նվաճումները պրակտիկայում լայնորեն արմատավորելուն՝ կոմունիզմի մեծ կառուցումների կենսագործմանը նպաստելուն։

Իդեոլոգիական աշխատանքի բնագավառում, ջանքերը պետք է ուղղել սովետական մարդու հայրենասիրական մարտական ոգու հետագա դաստիարակության, ժողովուրդների բարեկամության ամրապնդման, ռևոլյուցիոն զգոնության բարձրացման և բուրժուական իդեոլոգիայի բոլոր տեսակի դրսևորումների նկատմամբ անհանդուրժողականության զգացմունքի ուժեղացման հարցերին։

Մարտերում կոփված կոմունիստական պարտիայի փորձված ղեկավարությամբ, Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ մենք վստահորեն գնում ենք դեպի մեր մեծ նպատակը, դեպի կոմունիզմ։

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

«ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումները»: *(1951 թվականի ապրիլի 3—5-ին)*: *27 էջ, գինը 35 կոպ.:*

«Օգնություն քաղզպրոցների ունկնդիրներին»: *Գիրք երկրորդ: 221 էջ, գինը 4 ռ. 70 կոպ.:*

*Ա. Ս. ԱՄԱՏՐՅԱՆ.*— «Գրական-քննադատական ակնարկներ»: *304 էջ, գինը 9 ռ. 30 կոպ.:*

*Հ. Մ. ՊԻՈՏՐՈՎՍԿԻ.*— «Էլեկտրական մեքենաներ»: *Գինը 18 ռ. 75 կոպ.:*

*ՎԱՀԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ.*— «Գոեմ հողի մասին»: *90 էջ, գինը 20 կոպ.:*

---

Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 20 1951 г.

ՎՖ 04844 Պատվեր № 897 Տիրաժ 9350

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան:
Երևան

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

# ԲԱՑՎԱԾ Է
# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի 1952 ԹՎԻ
## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունը ընդունվում է Սոյուզպեչատի և փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկություններում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնական հիմնարկներում, սովխոզներում և կոլխոզներում, մամուլի հասարակական լիազորների մոտ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**12 ամիսը 24 համարը— 12 ռուբլի**
**6 ամիսը 12 „ — 6 „**
**3 ամիսը 6 „ — 3 „**
**Մեկ համարը — 50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**